Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 16 ՕԳՈՍՏՈՍ 1952

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---


Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿ(բ)Պ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 2—52—78


# ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԱՌԱՋՆԱՀԵՐԹ ԽՆԴԻՐՆԵՐԸ

1952 թվականի հոկտեմբերի 5-ին Համ. Կ(բ)Պ հերթական 19-րդ համագումար հրավիրելու և ՍՍՌՄ զարգացման 1951—1955 թվականների հինգերորդ հնգամյա պլանի վերաբերյալ պարտիայի 19-րդ համագումարի դիրեկտիվների նախագծի մասին լուրը քաղաքական և արտադրական վերելք է առաջ բերել ռեսպուբլիկայի աշխատավորության մեջ։

Պարտիայի 19-րդ համագումարը կամփոփի բոլշևիկյան պարտիայի գլխավորությամբ. մեր երկրի ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում ձեռք բերված նվաճումները և կհաստատի Սովետական հայրենիքի զարգացման Ստալինյան նոր հնգամյա պլանը։

Հինգերորդ հնգամյա պլանը սահմանում է ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության նոր, հզոր վերելք և ապահովում է մեր ժողովրդի նյութական բարեկեցության ու կուլտուրական մակարդակի հետագա զգալի աճը։

Նոր հնգամյակում արդյունաբերական ար-

տադրության մակարդակը բարձրանալու է
70 տոկոսով, գյուղատնտեսական արտա-
դրանքի արտադրությունն ավելանալու է
40—50 տոկոսով։ Հնգամյակի ընթացքում
նախատեսվում է ազգային եկամտի աճ ա-
նվազն 60 տոկոսով և ժողովրդական տնտե-
սության մեջ բանվորների ու ծառայողների
թվի հետագա ավելացումը, նրանց ռեալ աշ-
խատավարձի և գյուղացիների եկամուտների
բարձրացումը։

Հնգամյա պլանով առաջադրվող այդ խըն-
դիրները կատարելու համար խոշոր անելիք-
ներ ունեն ագիտատորները։ Նրանք պետք է
ամենօրյա բացատրական-քաղաքական աշ-
խատանքի միջոցով նպաստեն լայն ծավա-
լելու սոցիալիստական մրցությունը և աշ-
խատավորների անսասան վճռականությունը
ուղղեն նոր հնգամյակի կատարմանն ու գե-
րակատարմանը։

Ռեսպուբլիկայի արտադրական ձեռնար-
կությունները ամենուրեք մտնում են սո-
ցիալիստական մրցության մեջ, ստանձնում
են նորանոր պարտավորություններ՝ մեր ժո-
ղովրդի կյանքում կարևոր պատմական
իրադարձություն հանդիսացող 19-րդ համա-
գումարն արտադրական պլանների գերա-
կատարումով դիմավորելու համար։



Երևանի էլեկտրամեքենաշինական, Ավտո-
դողերի, Ավտոդետալ և շատ ուրիշ գործա-
րանների կոլեկտիվներն ի պատիվ 19-րդ
համագումարի պարտավորություն են ստանձ-
նել ժամկետից շուտ կատարելու արտա-
դրական պլանները։

Ագիտատորների խնդիրն է՝ ժողովրդական
տնտեսության յուրաքանչյուր ճյուղում աշ-
խատող ամեն մի կոմունիստի, կոմերիտա-
կանի և անպարտիական բոլշևիկի գիտակ-
ցությանը հասցնել նրա դերը բոլշևիկների
պարտիայի առաջադրանքները կատարելու
գործում։

Յուրաքանչյուր ագիտատոր պետք է խորը
թափանցի ձեռնարկության, հիմնարկի գոր-
ծերի մեջ, բազմակողմանիորեն ուսումնա-
սիրի և պարզի, թե նոր հնգամյակը ինչպի-
սի խնդիրներ է դնում տվյալ կազմակեր-
պության, հիմնարկության, ձեռնարկության
առաջ, բոլշևիկյան ճշմարիտ խոսքով օգնի
աշխատավորության լայն մասսաներին ըմ-
բռնելու իրենց խնդիրները և մոբիլիզա-
ցիայի ենթարկելու բոլոր ուժերը բոլշևիկ-
ների պարտիայի ու սովետական կառավա-
րության առաջադրանքներն անթերի կատա-
րելու համար։

Գյուղատնտեսության բնագավառում հինգերորդ հնգամյա պլանով առաջադրվող խնդիրների լրիվ կենսագործումն ապահովող անհրաժեշտ պայման է հանդիսանում քաղաքական-մասսայական աշխատանքի լայն ծավալումը գյուղում։ Ագիտատորների խնդիրն է՝ ամենօրյա քաղաքական-բացատրական աշխատանքի միջոցով մոբիլիզացնել կոլտնտեսականների, ՄՏ կայանների և սովխոզների աշխատողների բոլոր ուժերը գյուղատնտեսության աննախընթաց վերելքի խնդիրները հաջողությամբ կատարելու և պայքար ծավալելու գյուղատնտեսական արտելի օրինակելի Կանոնադրությունն անշեղ կենսագործելու, կոլտնտեսություններում աշխատանքը ճիշտ կազմակերպելու, կոլեկտիվ տնտեսությունները տնտեսապես-կազմակերպորեն ամրապնդելու համար։

Հմտորեն օգտագործելով բոլշևիկյան մարտական ագիտացիայի բազմազան ձևերը, ագիտատորներն ու պրոպագանդիստները մասսաներին պետք է պարզաբանեն պարտիայի 18-րդ համագումարից մինչև 19-րդ համագումարն ընկած ժամանակամիջոցում ՍՍՌՄ ժողովուրդների կողմից ձեռք բերված նվաճումները կոմունիստական հասարա-



կարգի շինարարության բնագավառում և նրանց բացատրեն այն կոնկրետ խնդիրները, որոնք այսօր դրվում են ռեսպուբլիկայի աշխատավորության առջև։

Ագիտատորները քաղաքական-մասսայական աշխատանքը պետք է սերտորեն կապեն ռեսպուբլիկայի յուրաքանչյուր շրջանի, քաղաքի, գյուղի, ամեն մի ձեռնարկության, կոլտնտեսության և սովխոզի առաջ դրված կոնկրետ խնդիրների հետ։ Զեկուցումների, զրույցների, թերթերի ընթերցանության ժամանակ նրանք պետք է լայնորեն օգտագործեն տեղական նյութերը, որոնք ցույց են տալիս, թե սովետական մարդիկ ինչպիսի անձնվեր պայքար են մղում մեր Հայրենիքի բարգավաճման համար, ինչպես նաև արմատավորեն արդյունաբերության և գյուղատնտեսության առաջավորների փորձը։

Վ. Ի. Լենինը բազմիցս նշել է, որ տնտեսական ընդհանուր վերելքի համար անհրաժեշտ է, որպեսզի արտադրության նոր կազմակերպման փորձը դառնա մասսաների սեփականությունը։ Ուստի ագիտատորի առաջնահերթ խնդիրն է՝ ընդհանրացնել առաջավորների փորձը, տեսնել այն նորը, առաջադիմականը, որը ծնվում է ժողովրդի ստեղծագործական նախաձեռնությամբ, կա-

յուրանալ իմաստավորել, տարածել և լայն մասսաներին դաստիարակել առաջավորների օրինակով։

Մասսայականացնելով արտադրության և գյուղատնտեսության առաջավորների փորձը, միաժամանակ քաղաքական-մասսայական աշխատանքը պետք է ուժեղացնել այն ձեռնարկություններում, կոլտնտեսություններում, տեղամասերում, որոնք ետ են մնում և չեն կատարում ստանձնած պարտավորությունները։

Ագիտացիոն մասսայական աշխատանքի հմուտ կազմակերպումով հարկավոր է օգնել, որպեսզի ետ մնացող բոլոր կոլեկտիվները հասնեն առաջավորների մակարդակին, պատվով կատարեն 19-րդ համագումարի առթիվ սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունները։

Նոր հնգամյա պլանը բոլոր սովետական մարդկանց համար ներկայացնում է մեր հայրենիքի հզորության ամրապնդման համար մղվող ամենօրյա պայքարի կոնկրետ ծրագիրը։ Հինգերորդ հնգամյա պլանի կատարումը խոշոր առաջընթաց քայլ կհանդիսանա սոցիալիզմից դեպի կոմունիզմ զարգացման ճանապարհին։

---

## ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ՔՆՆԱԴԱՏԱԿԱՆ ԴԻՏՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՊԱՐՏԻԱԿԱՆ ՀԱՇՎԵՏՈՒ-ԸՆՏՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐՈՒՄ ԵՎ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԱՆԵԼԻՔՆԵՐԸ

Հաշվետու-ընտրական ժողովները Կիրովականի օկրուգի սկզբնական պարտիական կազմակերպություններում անցան պարտիական-քաղաքական, պարտիական-կազմակերպական աշխատանքներն ուժեղացնելու, եղած թերությունները վերացնելու, պարտիայի և կառավարության որոշումները մինչև վերջ կենսագործելու համար աշխատավորության բոլոր ուժերը մոբիլիզացնելու նշանաբանով։

Պարտիական հաշվետու-ընտրական ժողովները նշեցին, որ հաշվետու ժամանակաշրջանում զգալիորեն բարելավվել է պարտիական կազմակերպությունների քաղաքական-մասսայական աշխատանքը բնակչության մեջ։

Պարտիական-քաղաքական աշխատանքը հմտորեն զուգակցելով տնտեսականի հետ՝ պարտիական կազմակերպությունները կոլ-

տնտեսություններում, մեքենատրակտորային կայաններում, արդյունաբերական ձեռնարկություններում, ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում սոցիալիստական մրցություն ծավալելով, պայքար են կազմակերպել գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության, անասնապահության մթերատվության, թողարկվող արդյունաբերական արտադրանքի որակի բարձրացման համար։

Սկզբնական պարտիական կազմակերպություններում օգոստոս ամսում տեղի ունեցած հաշվետու-ընտրական ժողովներն ընդգծեցին, որ օկրուգի պարտիական կազմակերպություններն լուրջ աշխատանք են կատարել աշխատավորության կոմունիստական դաստիարակության ուղղությամբ, բարելավելով քաղաքական ագիտացիայի գործը։

Կենսագործելով պարտիայի ցուցումները, Կիրովականի օկրուգի պարտիական կազմակերպությունները, բոլշևիկյան ագիտացիան ամբողջովին ուղղել են աշխատավորության քաղաքական դաստիարակության,



մասսաների հետ պարտիայի կապերն է՛լ ավելի ամրապնդելու նպատակին։

Պարտիական կազմակերպություններն այժմ, գյուղատնտեսական կուլտուրաների բերքահավաքի այս կարևոր ժամանակաշրջանում, մոտիկից են զբաղվում և ղեկավարում քաղաքական աշխատանքը, նրանք ագիտատորներին ցույց են տալիս ամենօրյա մեթոդական և գործնական օգնություն։ Քննարկում և ավելի ակտուալ ու գործնական են դարձնում նրանց աշխատանքների ծրագրերը։

Սկզբնական պարտիական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներում կոմունիստներն ամփոփելով քաղաքական ագիտացիայի բնագավառում ձեռք բերված հաջողությունները, միաժամանակ բոլշևիկյան առողջ քննադատությամբ ու ինքնաքննադատությամբ բացահայտեցին դեռևս գոյություն ունեցող թերություններն այդ գործում։

Հաշվետու-ընտրական ժողովներում արդարացի քննադատության ենթարկվեցին ա-

ռանձին ագիտ-կոլեկտիվներ և մի շարք ագիտատորներ, որոնք բերքահավաքի այս եռուն ժամանակաշրջանում թուլացրել են աշխատավորության շրջանում կատարվող քաղաքական-մասսայական աշխատանքը, կամ բոլորովին չեն զբաղվում այդ գործով։

Սևանի շրջանի մեքենատրակտորային կայանի սկզբնական պարտիական կազմակերպության հաշվետու-ընտրական ժողովում կոմունիստներ Վ. Համբարձումյանը, Շ. Կիրակոսյանը, Ա. Հարությունյանը իրենց ելույթներում նշեցին, որ վերջին ժամանակներս ագիտացիոն աշխատանքները տրակտորիստների շրջանում գրեթե ինքնահոսի են մատնվել։ Ագիտատորները դաշտում աշխատող տրակտորիստներին և մյուս աշխատողներին չեն ապահովում օրվա թերթերով, նրանց համար զրույցներ ու բարձրաձայն ընթերցանություններ չեն կազմակերպում, նրանց տեղյակ չեն դարձնում մեր երկրի ամենօրյա հաջողություններին ու իրադարձություններին։

Կիրովականի շրջանի Կոնսերվտորեսայի Շահումյանի անվան սովխոզի և Բղովդալ



գյուղի պարտիական կազմակերպություննե-րի հաշվետու-ընտրական ժողովներում ելույթ ունեցող ընկերները նշեցին, որ աշխատավորության համար շատ քիչ զրույցներ են կազմակերպվում, հազվադեպ անցկացվող պարապմունքներն անհետաքրքիր են անցնում։ Բղովդալ գյուղի կոլտնտեսության ագիտկոլեկտիվի ղեկավար Գ. Մհերյանը մեկ ամսից ավելի է, ինչ բացակայում է գյուղից, սակայն նրան ոչ ոք չի փոխարինում, կոլտնտեսության դաշտերում աշխատավորության համար զեկուցումներ և զրույցներ չեն կազմակերպվում։ Անկանոն են ստացվում օրվա թերթերն ու ամսագրերը։ Բղովդալի կոլտնտեսության ագիտատորները չեն զբաղվում բրիգադներում խլյիշովկաներ հրատարակելու, ցուցադրական ագիտացիա կազմակերպելու գործով։

Նույնպիսի վիճակ տեղի ունի նաև Շահումյանի անվան սովխոզում։

Կիրովական քաղաքի Տրիկոտաժ ֆաբրիկայի, Լիմոնադի գործարանի, ինչպես նաև Իջևանի շրջանի մի շարք կոլտնտեսային

*պարտիական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներում, կոմունիստները քննադատության ենթարկեցին ագիտկոլեկտիվների ղեկավարներին, որոնք անբավարար են ղեկավարում ագիտացիոն աշխատանքը, չեն հսկում և օգնություն ցույց չեն տալիս ագիտատորներին։*

*Հաշվետու-ընտրական ժողովներում կոմունիստները քննադատության նշանաբանի տակ բացահայտելով քաղաքական, ագիտացիոն-մասսայական աշխատանքի բնագավառում ագիտկոլեկտիվների գործունեության մեջ տեղ գտած թերությունները, նշեցին, որ նորընտիր պարտբյուրոները և կազմակերպությունների քարտուղարները պետք է միջոցներ ձեռք առնեն այդ թերությունները վերացնելու համար։*

*Պարտիական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներում արված առաջարկություններից ու քննադատական դիտողություններից ելնելով՝ ագիտկոլեկտիվները, յուրաքանչյուր ագիտատոր պարտիական կազմակերպությունների ղեկավարու-*



*թյամբ պետք է վերանայեն իրենց աշխատանքը և բոլոր ուժերն ուղղեն ագիտացիոն աշխատանքի հետագա բարելավման և ընդունած որոշումների կենսագործման նպատակին։*

*Ագիտատորների խնդիրն է՝ հաշվետու-ընտրական ժողովներում պարտիական կազմակերպությունների ընդունած որոշումները պարզաբանելու միջոցով մոբիլիզացնել աշխատավորական մասսաների ուժերը պարտիայի և սովետական կառավարության առաջադրանքները անթերի կատարելու համար։*

*Ագիտատորներն ամենօրյա հանրամատչելի զրույցներ պետք է կազմակերպեն նվիրված ՀամԿ(բ) պարտիայի 19-րդ հերթական համագումարին։ Անհրաժեշտ է լայնորեն մասսայականացնել պարտիայի 19-րդ համագումարի դիրեկտիվների նախագիծը ՍՍՌՄ զարգացման 1951—1955 թվականների հինգերորդ հնգամյա պլանի վերաբերյալ, պարզաբանել մասսաներին նոր հնգամյակում առաջադրված խնդիրները և մոբիլիզացիայի ենթարկել նրանց ուժերն այդ խնդիրները ժամկետից շուտ կատարելու համար։*

Ն. ԶԱՐԴԱՐՅԱՆ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ՆՅՈՒԹԱԿԱՆ ԲԱՐԵԿԵՑՈՒԹՅԱՆ ԱՆՇԵՂ ՎԵՐԵԼՔԸ

*ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության հզոր վերելքի հիման վրա անշեղորեն աճում են մեր երկրի աշխատավորների նյութական բարեկեցությունն ու կուլտուրան։*

*Մեր երկրի աշխատավորության նյութական բարեկեցության վերելքի ամենից ավելի փայլուն ցուցանիշն է ազգային եկամուտի անշեղ աճը, իսկ որքան շատ է ազգային եկամուտը, այնքան մեծ է սոցիալիստական պետության տնտեսական հզորությունը, այնքան բարձր է աշխատավորության հասարակական և անձնական բարեկեցությունը։ Եթե 1940 թվականին ՍՍՌՄ ազգային եկամուտը կազմում էր 128,3 միլիարդ ռուբլի (որը 6 անգամ գերազանցում էր ցարական Ռուսաստանի 1913 թվականի ազգային եկամուտի մակարդակը), ապա, հետպատերազմյան տարիներին մեր երկրի ժողովրդական տնտեսության հզոր վերելքի շնորհիվ ՍՍՌՄ ազգային եկամուտը 1950 թվականին 64 տոկոսով գերազանցեց նախապատերազմյան մակարդակը։ Ազ-*



*գային եկամուտի այդ հսկայական աճը հնարավորություն տվեց զգալիորեն բարելավելու մեր երկրի բանվորների, գյուղացիների, ինտելիգենցիայի նյութական դրությունը, կատարելու խոշոր ներդրումներ ժողովրդական տնտեսության մեջ և կուտակելու անհրաժեշտ պաշարներ։ Ի հակադրություն կապիտալիստական երկրների, որտեղ ազգային եկամուտի առյուծի բաժինն ընկնում է մի բուռ կապիտալիստների ձեռքը, սոցիալիզմի երկրում այն ամբողջությամբ պատկանում է ժողովրդին և օգտագործվում է բացառապես նրա շահերի համար։*

*Եթե սոցիալիզմի զարգացման օրենքը հանդիսանում է աշխատավորության բարեկեցության անշեղ վերելքը, ապա կապիտալիզմի զարգացման օրենքը բանվոր դասակարգի ու աշխատավոր գյուղացիության ավելի ու ավելի աղքատացումն է։*

*Ժամանակակից կապիտալիզմի հիմնական տնտեսական օրենքն է կապիտալիստական շահույթի մաքսիմալ ապահովումն իր երկրի բնակչության մեծամասնության շահագործման, այլ երկրների ժողովուրդների սիստեմատիկ կողոպտման ճանապարհով։*

*Սպառազինությունների կատաղի մրցավազքը, ժողովուրդների նկատմամբ նորանոր*

ագրեսիաների կազմակերպումը է՛լ ավելի անտանելի են դարձնում աշխատավորության դրությունը կապիտալի երկրներում։

ԱՄՆ-ի ֆեդերալ ռեզերվային վարչության տվյալներով 1951 թվականի մարտից մինչև սեպտեմբերը ընկած ժամանակամիջոցում ԱՄՆ-ում սպառման ապրանքների արտադրությունը կրճատվել է 37 տոկոսով։ Պաշտոնական տվյալներով ԱՄՆ-ում վերջին 15 տարվա ընթացքում ամեն մեկ շնչին ընկնող հացի օգտագործումը կրճատվել է 19 տոկոսով, յուղինը՝ 41 տոկոսով, զգալիորեն կրճատվել է կաթի, մսի և այլ մթերքների արտադրությունը։

ՍՍՌ Միությունում, որտեղ գործում է աշխատավորության բարեկեցության անշեղ բարձրացման օրենքը, անընդհատ բարելավվում են ժողովրդի նյութական տնտեսական պայմանները։

ՍՍՌՄ ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքը 1952 թվականի երկրորդ եռամսյակում, 1951 թվականի երկրորդ եռամսյակի համեմատությամբ, աճել է 11 տոկոսով, արդյունաբերության մեջ աշխատող բանվորների աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 6 տոկոսով, զգալի հաջողություններ են ձեռք բերվել նաև



գյուղատնտեսության բնագավառում։ Դրան համապատասխան՝ 1952 թվականի երկրորդ եռամսյակում պետական կոոպերատիվ առևտրի գծով բնակչությանը վաճառվել է 11 տոկոսով ավելի ապրանք, քան 1951 թվականի երկրորդ եռամսյակում, ընդ որում մթերքների և ձկնամթերքների վաճառքը ավելացել է 8 տոկոսով, յուղի և ճարպի վաճառքը 22 տոկոսով, պանրինը՝ 41 տոկոսով, շաքարինը՝ 28 տոկոսով և այլն։

Մեծ հաջողություններ մենք ունենք աշխատավորների բնակարանային-կենցաղային պայմանների բարելավման ուղղությամբ։ Հայտնի է, որ Հայրենական պատերազմի տարիներին գերմանական ֆաշիստներն ավերել էին 1710 քաղաք, տասնյակ հազարավոր գյուղեր, 25 միլիոն մարդ մնացել էր անօթևան։ Պարտիայի ու կառավարության ձեռնարկած միջոցառումների շնորհիվ 1946—1950 թվականներին պետական ձեռնարկությունները, հիմնարկությունները, տեղական սովետները և քաղաքների ու բանվորական ավանների բնակիչները պետական վարկի օգնությամբ կառուցեցին ավելի քան 100 միլիոն քառ. մետր բնակելի տարածություն՝ հնգամյա պլանով նախատեսված 84,4 միլ. քառ. մետրի փոխարեն։

*Կապիտալիստական երկրներում աշխատավորությունը գտնվում է բնակարանային սուր պայմանների մեջ. բավական է ասել, որ ԱՄՆ-ում 48 միլիոն մարդ, որը կազմում է ամբողջ բնակչության մեկ երրորդը, ապրում են որջերում։ Լոնդոնում ավելի քան կես միլիոն մարդ չունեն բնակարան, Արևմտյան Գերմանիայում 7 միլիոն մարդ զուրկ են բնակարաններից։ Այս բոլորի կողքին ԱՄՆ-ի կոնգրեսը 1950 թվականին բնակարանային շինարարության համար առանձնացրեց ընդամենը 8,750 հազար դոլլար, իսկ ատոմային ռումբի արտադրության համար՝ մոտավորապես մեկ միլիարդ դոլլար։*

*Մեր երկրում բանվորներն ու ծառայողները, աշխատանքի ընդունակությունը կորցնելու դեպքերում, պետությունից ստանում են նպաստ։ 1952 թվականին սոցիալական ապահովագրության բյուջեն ավելի քան երկու անգամ գերազանցում է առաջին հրնգամյակում այդ նպատակի համար ծախսված ամբողջ գումարին։*

*Կապիտալիստական երկրների աշխատավորությունը կարող է միայն երազել սոցիալական ապահովագրության այնպիսի սիստեմի մասին, ինչպիսին կա Սովետական Միությունում։ ԱՄՆ-ում 75 միլիոն մարդ կամ*



*ամբողջ բնակչության կեսը զուրկ է սոցիալական ապահովագրությունից, Անգլիայում բանվորների միայն չնչին փոքրամասնությունն է օգտվում արձակուրդից։*

*Սովետական կառավարությունը, իրականացնելով իր հետևողական խաղաղասիրական քաղաքականությունը, ավելացնում է բնակչության բարեկեցությանը նպաստող հատկացումները։ 1946—1950 թվականներին սովետական պետությունը աշխատավորության սոցիալական-կուլտուրական պայմանների բարելավման միջոցառումների վրա ծախսել է 524,5 միլիարդ ռուբլի, որից ժողովրդական լուսավորության վրա՝ 259,9 միլիարդ ռուբլի, առողջապահության վրա՝ 94,4 միլիարդ ռուբլի։*

*Սովետական կարգը ստեղծել է բոլոր պայմանները գիտության ու կուլտուրայի չտեսնված վերելքի համար. վաղուց մեր երկրում իրականացվել է կուլտուրական ռևոլուցիան, գիտությունն ու կուլտուրան ծառայում են միայն ժողովրդական լայն մասսաների շահերին։ 1951 թվականին ՍՍՌ Միության սովորողների թիվը, ներառյալ ուսման բոլոր տեսակները, կազմեց 57 միլիոն մարդ։*

*Սովետական մարդիկ մեծ խանդավառու-*

թյամբ ձեռնամուխ են եղել աշխարհում ամենախոշոր հիդրոկայանների, ջրանցքների և ոռոգիչ սիստեմների կառուցմանը, որոնք հնարավորություն կտան էլեկտրիֆիկացնելու արտադրության շատ պրոցեսներ, կհեշտացնեն սովետական մարդկանց աշխատանքը, է՛լ ավելի կբարելավեն նրանց կյանքի պայմանները։ Միայն նոր էլեկտրակայանները տարեկան կտան 22,5 միլիարդ կիլովատ ժամ էժան էլեկտրականություն, ոռոգվող և ջրովի դարձվող տարածությունների ընդլայնումը հնարավորություն կտա լրացուցիչ կերպով արտադրելու 3 միլիոն տոննա բամբակի հումք, որը կազմում է ԱՄՆ-ում բամբակի տարեկան միջին արտադրության ավելի քան մեկ երրորդը, լրացուցիչ կարտադրվի նաև կես միլիարդ փութ ցորեն, 30 միլիոն փութ բրինձ, 6 միլիոն տոննա շաքարի ճակընդեղ և այլն։ Որպեսզի պարզ լինի, թե ինչքան է լինելու ստեղծվող հարստությունը, բավական է ասել, որ լրացուցիչ մթերքներով կարելի է կերակրել ու հագցնել 100 միլիոն մարդ։

Սովետական ժողովրդի բարեկեցության անշեղ վերելքի նոր պայմաններ է ստեղծում ՍՍՌՄ-ի զարգացման 1951—1955 թվական-



ների հինգերորդ հնգամյա պլանը։ Նոր հընգամյա պլանի մասին պարտիայի 19-րդ համագումարի դիրեկտիվների նախագծում նըշված է, որ ՍՍՌՄ-ի ազգային եկամուտը 1955 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, ավելանալու է 60 տոկոսով, բարձրանալու է բանվորների և ծառայողների ռեալ աշխատավարձը, հաշվի առնելով մանրածախ գների իջեցումը, առնվազն 35 տոկոսով։

Զգալի չափով ընդարձակվելու է գիտական և կուլտուրական հիմնարկների ցանցը ու բնակարանային շինարարությունը։

Սովետական մարդիկ իրենց փորձից գիտեն, որ արտադրության մեջ իրենց հաջողություններից, մեր Հայրենիքի տնտեսական և քաղաքական ամրապնդումից է կախված իրենց կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի հետագա վերելքը։ Դրա համար էլ բոլշևիկյան պարտիայի և ընկեր Ստալինի ղեկավարությամբ մեր երկրի աշխատավորությունը սոցիալիստական մրցություն ծավալելով՝ հաջողությամբ իրականացնում է ժողովրդատնտեսական պլանները, արագացնելով կոմունիզմի կառուցման տեմպերը։

ՕՆ. ՀՈՎԱԿԻՄՅԱՆ

# ԾԱՎԱԼԵՆՔ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ ԽՆԱՅՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Մագնիտոգորսկի Մետալուրգիական կոմբինատի և Մոսկվայի Ստալինի անվան ավտոգործարանի նորարարները հայրենասիրական նոր նախաձեռնություն են հանդես բերել։ Նրանք սոցիալիստական պարտավորություն են ստանձնել արտադրական կորուստներն իսպառ վերացնելու, յուրաքանչյուր միավորի արտադրության ժամանակ հումքը տնտեսելու, արտադրանքի թողարկումն ավելացնելու և դրանով իսկ ժամկետից շուտ կատարելու 1952 թվականի արտադրական պլանները։

Մագնիտոգորսկի մետալուրգների և Մոսկվայի ավտոշինարարների այս հայրենասիրական հիանալի նախաձեռնությունը լայն արձագանք է գտել մեր երկրի բոլոր մասերում։ Սովետական Հայաստանի աշխատավորները իրենց ժողովներում ու արտադրա-



կան խորհրդակցություններում այդ նախաձեռնությունը քննարկելով՝ ծավալել են անհատական և կոլեկտիվ սոցիալիստական մրցություն՝ ստանձնելով նոր, ավելի բարձր պարտավորություններ։ Երևանի «Ավտոդետալ» գործարանի կոլեկտիվը պայքարում է հումքի կորուստները կանխելու միջոցով այս տարի տնտեսել 250 տոննա թանկարժեք մետաղ։ Երևանի Կոմպրեսորների գործարանի կոլեկտիվը պարտավորվել է հումքը խնայելու հետ միասին աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 22 տոկոսով, արտադրանքի ինքնարժեքն իջեցնել 9,4 տոկոսով, 1952 թվականի պլանները կատարել ժամկետից շուտ։

Մեր ագիտատորների խնդիրն է՝ պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ է՛լ ավելի ակտիվորեն կազմակերպել ու գլխավորել խնայողության համար ծավալվող անհատական և կոլեկտիվ սոցիալիստական մրցությունը՝ արդյունաբերության, տրանսպորտի և գյուղատնտեսության աշխատողների շրջանում։

Ագիտատորներն աշխատավորներին հանգամանորեն պետք է պարզաբանեն, որ կո-

մունիզմի կառուցման տեմպերն արագացնելու, մեր երկրում ապրանքների ու մթերքների կատարյալ առատություն ստեղծելու, մեր հայրենիքի հզորությունն է՛լ ավելի ամրապնդելու գործում վճռական նշանակություն ունեն խնայողությունները։

Թե որքան մեծ է խնայողաբար աշխատելու օգուտը ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության համար, այդ երևում է 1951 թվականի տնտեսական պլանների հիման վրա արված հետևյալ ճշգրիտ հաշվարկումներից։

Մետալուրգիական արդյունաբերության մեջ ծախսվող մազութի մեկ տոկոսի խնայողությունը մեր երկրին հնարավորություն կտա լրացուցիչ կերպով ձուլելու մի քանի հարյուր հազար տոննա պողպատ։

Շինարարության արժեքի յուրաքանչյուր մեկ տոկոսի իջեցումը տարեկան տալիս է այնքան խնայողություն, որով կարելի է բնակելի շենքեր կառուցել 100 հազար մարդու համար։

Եթե յուրաքանչյուր կառուցող աշխատանքի արտադրողականությունը բարձրացնի միայն մեկ տոկոսով, այդ մեր երկրին հնա-



րավորություն կտա լրացուցիչ կերպով կառուցելու մեկ տրակտորային գործարան՝ տարեկան 20 հազար տրակտորի արտադրողականությամբ։

Տեքստիլ արդյունաբերության մեջ հումքի մեկ տոկոսի խնայողությունը երկրին տարեկան լրացուցիչ կտա տասնյակ միլիոն մետր բամբակյա, վուշի, բրդյա և մետաքսյա գործվածք։

Թեթև արդյունաբերության մեջ, ձևելու ժամանակ կաշվի խնայողության յուրաքանչյուր տոկոսը հնարավորություն կտա լրացուցիչ թողարկելու միլիոնավոր զույգ կոշիկ։

Հացի արդյունաբերության մեջ արտադրական կորուստների մեկ տոկոսով իջեցումը երկրին կտա հսկայական քանակությամբ լրացուցիչ հաց։

Վագոնների դատարկ վազքի իջեցումը 1 տոկոսով՝ հնարավորություն կտա տարեկան լրացուցիչ փոխադրելու մի քանի միլիոն տոննա բեռ։

Նավթամթերքի 1 տոկոսի կորստի կան-

խումը հնարավորություն կտա ապահովելու լրացուցիչ 15 հազար ավտոմեքենայի տարեկան աշխատանքը և երկաթուղով 10 հազար վագոն բեռի փոխադրումը՝ 1000 կիլոմետր տարածության վրա։

Գյուղատնտեսության մեջ, եթե բերքը հավաքելուց հետո դաշտի յուրաքանչյուր քառակուսի մետրի վրա մնացած լինի 5 հասկ, ապա դրանից հացահատիկի կորուստը հեկտարից կկազմի 37 կիլոգրամ։ Այդ հասկերի հավաքումը երկրին լրացուցիչ կտա հարյուրավոր միլիոն փութ հացահատիկ։

Ծակնդեղի բերքի 1 տոկոսի կորուստը կազմում է 2 միլիոն ցենտներ։ Այդ կորուստը կանխելու դեպքում երկիրը լրացուցիչ կստանա 280 հազար ցենտներ շաքար։

Վերևում բերված թվերն ու փաստերը ակնառու կերպով ցույց են տալիս այն հսկայական նշանակությունը, որ ունի խնայողությունը ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության համար։ Աշխատանքային ժամի մեկ րոպեի արդյունավետ օգտագործումը, հումքի, վա-



ռելիքի, բերքի և այլ ունեցվածքի մեկ տոկոսի խնայողությունը մեր երկրին կտա միլիարդավոր ռուբլիների օգուտ։

Ընկեր Ստալինը ուսուցանում է, թե «Երբեք մի հրաժարվեք աշխատանքի մեջ փոքրից, որովհետև փոքրից է կառուցվում մեծը,— այս է Իլյիչի կարևոր պատգամներից մեկը»։ Ահա թե ինչու խնայողության համար պայքարը պետք է սկսել արտադրանքի յուրաքանչյուր միավորի արտադրության պրոցեսից։

Մագնիտագորսկի մետալուրգների և Մոսկվայի ավտոշինարարների նախաձեռնության մեջ նորն այն է, որ նրանք պարտավորություն են ստանձնել արտադրական կորուստների իսպառ վերացումը, հումքի տնտեսումը սկսել յուրաքանչյուր միավորի արտադրությունից։

Հետևելով մեր մեծ Միության առաջավոր ձեռնարկությունների օրինակին՝ մեր ռեսպուբլիկայի արտադրական օբեկտներում օրեցօր ծավալվում է պայքարը խնայողությունների համար։

*Այդպիսի խրախուսելի օրինակ է հանդիսանում Երևանի Մուլիտի գործարանը, որի ցեխերում կիրառելով արտադրության առաջավորների փորձը, խնայողաբար ծախսելով հումքը, օժանդակ նյութերն ու մյուս միջոցները, կոլեկտիվը հասավ այն բանին, որ 1952 թվականի 7 ամսվա ընթացքում տնտեսած նյութերի հաշվին պետությանը տվեց 144 հազար ռուբլու օգուտ։*

*Խնայողության համար աշխատավորության շրջանում մասսայական բացատրական աշխատանքը պետք է նպաստի բարելավելու աշխատանքի կազմակերպումն արտադրության մեջ, բարձրացնելու աշխատանքային կարգապահությունը, հայտնաբերելու և արդյունավետ օգտագործելու այն հսկայական ռեզերվները, որ կան յուրաքանչյուր ձեռնարկությունում, սովխոզում և կոլտնտեսությունում։*

Տ. ՎԱՐԺԱՊԵՏՅԱՆ

---

ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԻՑ

## ՀԵՐԹԱՓՈԽՈՒԹՅԱՆ ԱԳԻՏԱՏՈՐԸ

*Ագիտացիոն աշխատանքի ուսանելի փորձ ունի Երևանի Կոնսերվի գործարանի մրգի ցեխի առաջին հերթափոխության ագիտատոր Տաճատ Մուրադխանյանը։ Սիստեմատիկաբար կատարելագործելով ագիտացիոն աշխատանքի իր մեթոդները՝ նա հերթափոխության կոլեկտիվում առաջ է բերում աշխատանքային խանդավառություն և այն օգտագործում առաջադրված խնդիրների կատարման համար։ Այս գործում ագիտատոր Մուրադխանյանը հասել է աչքի ընկնող հաջողության, որովհետև նրա ագիտացիոն զրույցը բովանդակալից է, հետաքրքիր, մատչելի ու նպատակասլաց։ Նրա ագիտացիոն աշխատանքի հաջողության ամենակարևոր պայմաններից մեկն այն է, որ նա հանգամանորեն հաշվի է առնում ունկնդիրների պահանջը, նրանց հուզող ու հետա-*

քրքրող հարցերը, որոնք հմտորեն զուգակցում է իրենց գործարանի կոլեկտիվի, ցեխի ու հերթափոխության առջև դրված խնդիրների հետ։

Առաջին հերթափոխության բանվորները սովորաբար աշխատանքի են գալիս 15—20 րոպե շուտ, և այդ կարճ ժամանակը բավական է, որ ագիտատորն ունենա իր մտածված ու պլանավորված զրույցը։ Երբեմն Մուրադխանյանն իր զրույցը սկսում է օրվա նոր ստացած թերթերից, Միության և մեր ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկությունների հաջողությունների մասին տպագրված ինֆորմացիաներից ու հոդվածներից։ Նա հակիրճ պատմում ու պարզաբանում է, թե որ գործարանի մասին թերթն ինչ է հրապարակել, առանձին հոդվածներից կարդում է հատվածներ, կատարում մեջբերումներ։

Գովելի ու խրախուսելի պետք է համարել այն, որ Մուրադխանյանը միշտ օգտագործում է «Պրավդա»-ի էջերում նորարարների, արտադրության առաջավորների, մրց-



ցության նախաձեռնողների մասին եղած հոդվածները։ Դրա շնորհիվ բանվորները միշտ տեղյակ են լինում Միության առաջավոր արտադրական ձեռնարկություններում ծնունդ առած հայրենասիրական յուրաքանչյուր նոր նախաձեռնությանը, ճանաչում են նրանց հեղինակներին՝ Ա. Չուտկիխին, Կորոբեյնիկովային, Լևչենկոյին, Մուխանովին, Ժանդարովային ու Ագաֆոնովային, ինժեներ Կովալյովին, որոնք արտադրության կատարելագործման համար արժանացել են Ստալինյան մրցանակի լաուրեատի պատվավոր կոչման։

Ագիտատոր Մուրադխանյանը նրանց օրինակը օգտագործում է բանվորների մեջ դեպի աշխատանքը կոմունիստական վերաբերմունք դաստիարակելու համար։

Իր հերթական զրույցներից մեկում ագիտատորը հերթափոխության բանվորների ուշադրությունը արտադրանքի որակի բարելավմանն ուղղելու համար կարդաց Ալեքսանդր Չուտկիխի հետևյալ խոսքերը, որը վերցրել էր թերթից։

«Իմ բրիգադն աշխատում է թանկարժեք մերինոսե մանվածքով, բաց է թողնում բոստոն և այլ բարձրորակ բրդյա կտորեղեն։ Երբեմն անցնում եմ փողոցով և տեսնում մի հիանալի կոստյում կամ մի գեղեցիկ շոր և ուշադիր դիտում ծանոթ կտորը։ Արդյոք մեր բրիգադի պատրաստած կտորը չի՞ սա։ Մեր արտադրանքը մեզ մոտ միշտ էլ աչքի է ընկնում, և մենք երբեք նրա համար կարմրելու առիթ չենք ունենում... Մենք պարծենում ենք մեր արտադրանքով և ուզում ենք, որ ամբողջ սովետական արտադրանքը, մեր ռուսական բոլոր տեսակի կրտորները, մեքենաները, կոշկեղենը, դազգահները, ամեն ինչ, որ արտադրում է աշխարհում առաջին սոցիալիստական պետության բանվորը, ամենալավը լինի աշխարհումս։

Ագիտատորի զրույցից հետո առաջին հերթափոխության՝ Վ. Բաղրամյանի բրիգադը որոշեց ընդօրինակել Ա. Զուտկիխին, հայտարարեց իրեն գերազանց որակի համար պայքարող բրիգադ և մրցման հրավիրեց երկրորդ հերթափոխության Ն. Ավետիսյանի բրիգադին։ Երկու բրիգադների փոխադարձ մրցությանը շուտով արձագանքեցին գործարանի բոլոր բրիգադները, որոնք իրենց յարված աշխատանքով գերակատարեցին կոնսերվների թողարկման պլանը, իսկ վարդի և ընկույզի մուրաբաների ասորտիմենտի գծով 2 տոկոս ավելի բարձրորակ արտադրանք տվին, քան նախատեսված էր պլանով։ Երբ գործարանում այդ փաստը հայտնի դարձավ ու տարածվեց, ագիտատոր Մուրադխանյանը այն խելացիորեն օգտագործեց իր հերթական զրույցի ժամանակ։

— Այո, ընկերնե՛ր, ձեր լավ աշխատանքի շնորհիվ, արտադրանքի որակի պլանի գերակատարման հաշվին, գործարանը երկրին տվեց տասնյակ հազար ռուբլու սոցիալիստական կուտակում։ Սակայն այդ ստացված օգուտը ավելին կլիներ, եթե մյուս օժանդակ բրիգադներն էլ իրենց բաժինը մտցնեին։

— Օրինակ, հումքի ընդունման հրապարակի Ձեր բրիգադը, ընկեր Սիրունյան, կարող է գործարանին ավելի շատ օգուտ տալ։ Այդ օգնությունը կարտահայտվի նրանում, եթե

դուք ոչ մի գրամ հումքի կորուստ չտաք,— ասաց ագիտատորը և նշեց, թե ինչպես նախորդող հերթափոխության բրիգադի աշխատամասում միրգ էր թափթփված, անխնամ բեռնաթափման ու տեղափոխման հետևանքով առաջ է եկել հումքի փչացում: Նա ցույց տվեց, որ եթե յուրաքանչյուր հերթափոխություն աշխատի այնպես, որ կորուստներ չլինեն, ապա գործարանի տված սոցիալիստական կուտակումն ավելի շատ կլինի:

Մուրադխանյանի զրույցը դիպուկ էր, նպատակասլաց և այն տվեց իր դրական արդյունքը: Մանյա Սիրունյանի բրիգադն սկըսեց աշխատել տնտեսման ռեժիմի խիստ կենսագործումով և մրցություն ծավալեց ոչ մի գրամ հումքի կորուստ չտալու համար: Այդ բրիգադի օրինակով ներկայումս աշխատում են նաև մյուս բրիգադները և այդ է պատճառը, որ գրեթե իսպառ վերջ է տրվել հումքի կորուստին, և կոլեկտիվը հասել է լուրջ հաջողությունների:



Որպես փորձված ագիտատոր՝ ընկ. Մուրադխանյանը հերթափոխության բանվորների շրջանում սիստեմատիկաբար մասսայականացնում է բոլշևիկների պարտիայի ու Սովետական կառավարության որոշումները, բնության վերափոխման ստալինյան հոյակապ պլանի կենսագործման մասին եղած հաղորդագրությունները, ժողովրդական տնտեսության, կուլտուրայի, արվեստի, գրականության, գիտության և լուսավորության զարգացման ասպարեզում սովետական ժողովրդի ձեռք բերած մեծագույն նվաճումները: Դրանից բանվորները նոր լիցք են ստանում՝ ավելի արդյունավետ աշխատելու և նորանոր հաջողությունների հասնելու համար: Ագիտատորը մասսայականացնում է նաև իրենց գործարանի հաջողությունները և միաժամանակ բանվորների ուշադրությունը սրում դեռևս եղած առանձին թերությունների վրա: Մուրադխանյանն ագիտացիոն զըրույցի ընթացքում հաճախ օգտագործում է քարտեզներ, պլակատներ, դիագրամներ, նըկարներ և ցուցադրական այլ նյութեր, որով զրույցի թեման դառնում է ավելի պատկերավոր ու դյուրըմբռնելի:

Գործարանի ագիտատորները շնորհակալ աշխատանք են տանում ՀամԿ(բ)Պ 19-րդ համագումարի մասին եղած նյութերը մասսայականացնելու և գործարանի առջև դրված խնդիրների կատարման համար բանվոր-ծառայողների ուժերը մոբիլիզացնելու ուղղությամբ։

Ագիտկոլեկտիվի լավագույն աշխատանքի շնորհիվ գործարանի կոլեկտիվը սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունները հաջողությամբ գործի է վերածում։ Արդեն բոլոր կարևոր ցուցանիշների գծով գերակատարվել է գործարանի 2 ասորտիմենտի՝ վարդի և ընկույզի մուրաբաների արտադրության տարեկան պլանը, իսկ գործարանի հուլիս ամսվա պլանը համախառն արտադրանքի գծով կատարվեց ժամկետից շուտ, հուլիսի 27-ին՝ Լենինի անվան Վոլգա-Դոն ջրանցքի բացման օրը։

Ոգևորված ձեռք բերված հաջողություններով՝ գործարանի կոլեկտիվը, ագիտատորների օգնությամբ, ի պատիվ 19-րդ համագումարի հրավիրման նոր թափով մրցություն է ծավալում արտադրական պլանները ժամկետից շուտ և բարձր որակով կատարելու համար։

Հ. ՆԱԶԱՐՅԱՆ



# ԻՆՉՊԵՍ ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏՎԵԼ ԶԵԿՈՒՅՑՄԱՆ

Բոլշևիկյան ագիտացիան հարուստ է բազմազան ձևերով ու մեթոդներով։ Խմբական և անհատական զրույցները, լրագրերի կոլեկտիվ ընթերցանությունը, քաղաքական զեկուցումներն ու ելույթները աշխատավորների ժողովներում իրենցից ներկայացնում են ագիտացիայի հիմնական ձևեր։

Քաղաքական զեկուցումը համարվում է բոլշևիկյան ագիտացիայի կարևորագույն ձևերից մեկը։

Զեկուցումը կազմակերպվում է համեմատաբար ավելի մեծ թվով ունկնդիրների համար։ Զեկուցումը սպառիչ լիակատարությամբ է լուսաբանում այս կամ այն հարցը, առաջ է քաշում նոր խնդիրներ և միջոցառումներ է նշում այն իրականացնելու համար։

Բոլշևիկյան ագիտացիայի բնորոշ գիծը

*դա նրա գաղափարական բարձր մակարդակը և նպատակասլացությունն է։ Մարքսիզմի կլասիկներն ուսուցանում են, որ պրոպագանդիստական և ագիտացիոն աշխատանքի գաղափարական ուղղությունը, հաջողությունը առաջին հերթին կախված է քաղաքական աշխատանքը վարող մարդկանցից, նրանց գիտակցականությունից և պատրաստականությունից։ Այստեղից՝ որպեսզի զեկուցումը լինի խորը գաղափարական, տոգորված լինի բոլշևիկյան պարտիականության ոգով, զեկուցողից պահանջվում է, որ նա քաղաքականապես պատրաստված լինի, տիրապետի մարքսիստական-լենինյան թեորիային։*

*Քաղաքական իրադարձությունների մասին աշխատավորների ժողովներում տրվող զեկուցումները պետք է լինեն խորապես գաղափարական, նպատակասլաց, գործուն, մարտական, ճշմարտացի, աշխատավորության ուժերը մոբիլիզացնող՝ առաջադրված խնդիրների կենսագործման համար։*

*Հաջող զեկուցում տալու համար առաջին պայմանը թեմայի ընտրությունն է։ Զեկուցման թեման պետք է լինի պարզ և հնարավորության սահմաններում համառոտ։*



*Քաղաքական զեկուցումների թեմատիկայում հիմնական տեղը գրավում են բոլշևիկների պարտիայի և սովետական կառավարության ներքին ու արտաքին քաղաքականության հարցերը, պարտիայի և կառավարության որոշումները, որոնք հետևողականորեն արտահայտում են Սովետական պետության էկոնոմիկայի, կուլտուրայի և հասարակական կյանքի հետագա զարգացման պահանջները։*

*Զեկուցման թեման ընտրելուց հետո, զեկուցողը պետք է նյութեր, փաստեր, տվյալներ հավաքի զանազան աղբյուրներից և ուսումնասիրի այն։*

*Քաղաքական թեմաների մասին զեկուցման ելակետային աղբյուր են հանդիսանում մարքսիզմ-լենինիզմի կլասիկների երկերը, բոլշևիկների պարտիայի և Սովետական կառավարության որոշումները։*

*Զեկուցման համար հարուստ և անսպառ աղբյուր է հանդիսանում հենց կյանքը, մեր սոցիալիստական շինարարության պրակտիկան։ Մ. Ի. Կալինինը ասել է՝*

*«Չէ՞ որ մեր կյանքը այժմ այնքան հարուստ է նշանավոր փաստերով, որ յուրաքանչյուր ագիտատոր, սկսած ամենափոքրից մինչև*

ամենամեծը, կարող է այնտեղ անսահման շատ պայծառ ու կենդանի նյութեր գտնել, որոնք անմիջականորեն շոշափում են ընթացիկ իրադարձությունները»:

Զեկուցման համար պետք է օգտագործել նաև տեղական նյութերը: Յուրաքանչյուր զեկուցողից պահանջվում է, ինչպիսի թեմայի մասին էլ զեկուցելիս լինի, անպայման տեղական խնդիրները կապել սովետական պետության առաջ դրված խնդիրների հետ, համոզիչ ձևով ապացուցելով ունկնդիրներին, որ մեր երկրի հաջողությունները կախված են այն բանից, թե յուրաքանչյուր կոլեկտիվ կամ առանձին աշխատող ինչպես է պայքարում պլանի ու առաջադրանքների կատարման համար: Այստեղից՝ տեղական նյութերին և փաստերին լավ ծանոթ լինելը և այն վարպետորեն օգտագործելը՝ կարևոր պայմաններից մեկն է հաջող զեկուցման համար:

Զեկուցում նախապատրաստելու համար անհրաժեշտ ձեռնարկներ են հանդիսանում նաև քաղաքական, գեղարվեստական գրականությունը, ամսագրերը և թերթերը, որոնցից անհրաժեշտ է վերցնել հիմնական մտքերն ու հետաքրքիր փաստերը, արտահայտությունները, վիճակագրական տվյալները



և այն օգտագործել բացարձակ ճշտությամբ:

Երբ զեկուցողը հավաքել է իր զեկուցման համար անհրաժեշտ նյութերն ու տվյալները, պետք է սկսի հավաքած նյութի մանրամասն ուսումնասիրությունը և մշակումը: Նյութի ուսումնասիրությունը ստեղծագործական պրոցես է, որի ժամանակ հարկավոր է մարքսիստական մատերիալիստական աշխարհայացքի դիրքերից քննադատաբար իմաստավորել այն:

Նյութի ուսումնասիրման ժամանակ առաջ են քաշվում այն հանգուցային հարցերը, որոնք պետք է լուսաբանվեն զեկուցման մեջ: Այդ ժամանակ անհրաժեշտություն է դառնում կազմել զեկուցման պլանը և շարադրել զեկուցումը:

Զեկուցման պլանը կարող է լինել համառոտ և ընդարձակ, որը որոշակի կերպով բացահայտում է նրա բովանդակությունը, նրա ուղղությունն ու խորությունը:

Զեկուցումը սովորաբար կազմվում է երեք մասից՝ նախաբան, հիմնական բովանդակություն և եզրակացություն: Նախաբանի նպատակն է ունկնդիրներին ընդհանուր պատկերացում տալ զեկուցման թեմայի մասին, ցույց տալ նրա նշանակությունը ներ-

կա էտապում և այսպիսով լարել ունկնդիր֊ների ուշադրությունը։

Հիմնական մասում ծավալվում է զեկուց֊ման բովանդակությունը, տրվում է դեպքերի վերլուծությունը, պարզաբանվում են հան֊գուցային հարցերը, տրվում են գնահատա֊կաններ և նրանցից բխող եզրակացություն֊ներ։

Եզրափակիչ մասում զեկուցողն ամփոփում է զեկուցումը և ունկնդիրների առաջ դնում կոնկրետ խնդիրներ։

Զեկուցման ամբողջ տեքստը պետք է կազմել գրավոր։

Զեկուցողը գրելով իր զեկուցման տեքստը, նախօրոք մտածում է յուրաքանչյուր արտա֊հայտության, յուրաքանչյուր խոսքի վրա։

Զեկուցման ժամանակ թվական տվյալնե֊րի, գեղարվեստական գրականության, քար֊տեզների հմտորեն և ճիշտ օգտագործումը կնպաստեն ունկնդիրներին ավելի լավ յու֊րացնելու ավանդվող նյութը։

Վ. Ի. Լենինը մեզ սովորեցնում է, որ «Պետք է կարողանալ առանց ֆրազների, ա֊ռանց բացատրությունների, ձեռքին ունենա֊լով փաստեր և թվեր՝ պարզաբանել սոցիա֊լիզմի հարցերը»։



Որպեսզի ունկնդիրները խորապես ըմբռ֊նեն և երկար ժամանակով հիշեն յուրաքան֊չյուր զեկուցման բովանդակությունը, ան֊հրաժեշտ է առանձին փաստեր և թվեր հա֊մադրել իրար հետ։ Օրինակ՝ «Աշխատան֊քի արտադրողականության բարձրացումը ՍՍՌՄ-ում» թեմայի մասին զեկուցում տա֊լիս, եթե զեկուցողը ձգտում է ցույց տալ աշխատանքի արտադրողականության բարձ֊րացման յուրաքանչյուր տոկոսի նշանակու֊թյունը, նա պետք է թվական տվյալնե֊րը համեմատի իրար հետ, ցույց տալով, որ հետպատերազմյան ստալինյան հնգամ֊յակում ձեռք բերած աշխատանքի արտադ֊րողականության աճի յուրաքանչյուր տոկո֊սը նշանակում է՝ արդյունաբերական արտա֊դրանքի ավելացում 1 միլիարդ 385 միլիոն ռուբլով, այն ժամանակ, երբ առաջին հըն֊գամյակում այն նշանակում էր՝ արդյունա֊բերական արտադրանքի ավելացում 310 մի֊լիոն ռուբլով, երկրորդ հնգամյակում՝ 500 միլիոն ռուբլով և երրորդ հնգամյակում՝ 1 միլիարդ ռուբլով։

Այսպիսով, յուրաքանչյուր ագիտատոր, պրոպագանդիստ զեկուցման նախապատ֊րաստվելիս պետք է խնամքով մտածի, թե

ինչպես ավելի լավ է օգտագործել թվական տվյալները և օժանդակ պարագաները։

Միայն թեման խնամքով և անթերի նախապատրաստելուց հետո զեկուցողը կարող է իրեն պատրաստ համարել հրապարակային ելույթի։ Հրապարակային ելույթը զեկուցողի աշխատանքի ամենապատասխանատու մոմենտն է։ Խոսը, բովանդակալից զեկուցումը պետք է տրվի հրապարակային ելույթի ազդու ձևով։ Զեկուցողից պահանջվում է, որ նա տիրապետի հռետորական արվեստին, որը ամենադժվար արվեստն է, ինչպես ասել է Մ. Ի. Կալինինը, բայց բնավ էլ մարդու բնածին հատկությունը չէ։ Այն ձեռք է բերվում գիտությամբ և փորձով, համառ աշխատանքի միջոցով։

Բոլոր նրանք, որոնց բոլշևիկների պարտիան վստահել է մասսաների մեջ քաղաքական և դաստիարակչական աշխատանք կատարել, չպետք է շփոթվեն առաջին անհաջողությունից և չարբենան հաջողությունից։ Սեր դեպի իր գործը, պատասխանատվության զգացում պարտիայի նկատմամբ, առաջ գնալու և իր վարպետությունը կատարելագործելու անսանձ ցանկություն՝ այս է զեկուցողի իսկական հաջողության ուղին։ Գ. ՄՈՒՐԱԴԽԱՆՅԱՆ

---

ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻՆ

# ԹԵՄԱՆԵՐ, ՊԼԱՆՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. ԼԱՅՆՈՐԵՆ ԾԱՎԱԼԵԼ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆ Ի ՊԱՏԻՎ ՀԱՄԿ(Բ)Պ 19-ՐԴ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ

1. ՍՍՌՄ զարգացման 1951—1955 թվականների հինգերորդ հնգամյա պլանի վերաբերյալ պարտիայի 19-րդ համագումարի դիրեկտիվների նախագիծը մեր արդյունաբերության և գյուղատնտեսության հետագա զարգացման վիթխարի ծրագիրն է։

2. ՍՍՌՄ զարգացման 1951—1955 թվականների հինգերորդ հնգամյա պլանի վերաբերյալ պարտիայի 19-րդ համագումարի դիրեկտիվների նախագիծը՝ ապրանքաշրջանառության, տրանսպորտի և կապի վիթխարի վերելքի ծրագիրն է։

3. Նոր հնգամյա պլանի դիրեկտիվների նախագիծը ժողովրդի նյութական բարեկեցության, առողջապահության և կուլտուրական մակարդակի հետագա աճի վառ ապացույցն է։

4. Ի պատիվ ՀամԿ(բ)Պ 19-րդ համագումարի՝ ծավալենք սոցիալիստական մրցություն և աշխատանքին նոր թափ հաղորդենք յուրաքանչյուր ձեռնարկությունում, սովխոզում, ՄՏ կայանում, կոլտնտեսությունում։

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

«Պարտիայի 19-րդ համագումարի դիրեկտիվները ՍՍՌՄ զարգացման 1951—1955 թվականների հինգերորդ հնգամյա պլանի վերաբերյալ»: *«Ս. Հ.» 1952 թ. օգոստոսի 20-ի համարը։*

«Լենինի-Ստալինի պարտիայի դրոշով դեպի կոմունիզմի հաղթանակը»: *«Պրավդա»-ի 1952 թ. օգոստոսի 21-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 22-ի համարում։*

«ՍՍՌՄ զարգացման հինգերորդ հնգամյա պլանը» *«Պրավդա»-ի օգոստոսի 22-ի առաջնորդողը տպագրված «Ս. Հ.»-ի 23-ի համարում։*

### *2. ԲԵՐՔԸ ՀԱՎԱՔԵԼ ԺԱՄԱՆԱԿԻՆ ԵՎ ԱՆԿՈՐՈՒՍՏ ԺԱՄԿԵՏԻՑ ՇՈՒՏ ԿԱՏԱՐԵԼ ՀԱՑԱՄԹԵՐՈՒՄՆԵՐԻ ՊԼԱՆԸ*

*1. Բերքը սեղմ ժամկետում և անկորուստ հավաքելը, հացամթերումների պլանները նշված ժամկետին կատարելը— սոցիալիստական գյուղատնտեսության աշխատողների ամենահրատապ խնդիրն է։*

*2. Աշխատանքի ճիշտ կազմակերպումը և արտադրական պլանի կատարումը— բերքահավաքը սեղմ ժամկետում կատարելու հիմնական պայմանն է։*

*3. Պայքարը կորուստների դեմ և բերքի պաշտպանությունը հանդիսանում է գյուղատնտեսության բոլոր աշխատողների սրբազան պարտականությունը։*

*4. Ինչպես է բերքը հավաքվում մեզ մոտ՝ կոլտնտեսությունում, բրիգադում և յուրաքանչյուր կոլտնտեսական ինչպես է պայքարում սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունները կատարելու համար։*



### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

«Արդյունավետ օգտագործել կոմբայններն ու կալսիչները»: *«Ս. Հ.» 1952 թ. հուլիսի 24-ի առաջնորդողը։*

«Սոցիալիստական Աշխատանքի Հերոսների օրինակով»: *«Ս. Հ.» 1952 թ. օգոստոսի 7-ի առաջնորդողը։*

«Ուժեղացնել պայքարը բերքի կորուստների դեմ»: *«Ս. Հ.» 1952 թ. օգոստոսի 15-ի առաջնորդողը։*

### *3. ՄՏ ԿԱՅԱՆԸ— ԲԵՐՔԱՀԱՎԱՔԸ ՀԱՋՈՂՈՒԹՅԱՄԲ ԿԱՏԱՐԵԼՈՒ ՎՃՌՈՂ ՈՒԺՆ Է*

*1. Բերքահավաքի ընթացքում տեխնիկան լրիվ կարողությամբ և բարձր արտադրողականությամբ օգտագործելը ՄՏ կայանի մեխանիզատորների գլխավոր խնդիրն է։*

*2. ՄՏ կայանի մեխանիզատորների կողմից ժամային գրաֆիկով աշխատելը, նորմաների կատարումն ու գերակատարումը հանդիսանում է բերքը հաջողությամբ հավաքելու կարևորագույն պայմանը։*

*3. Մեքենաների տեխնիկական սիստեմատիկ խնամքը, բերքահավաքի աշխատանքների ինքնարժեքի իջե-*

ցումը, վառելանյութի խնայողությունը՝ բոլոր մեխանիզատորների պարտականությունն է։

4. ՄՏ կայանի բոլոր աշխատողների պարտքն է պայքար մղել կորուստների դեմ բերքը հավաքելու և փոխադրելու ժամանակ։

5. Ծավալել սոցիալիստական մրցությունը բոլոր մեխանիզատորների մեջ տեխնիկան լրիվ կարողությամբ օգտագործելու և ստանձնած պարտավորությունները ժամկետից շուտ ու որակով կատարելու համար։

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

«Արդյունավետ օգտագործել կոմբայններն ու կալսիչները»: *«Ս. Հ.» 1952 թ. հուլիսի 24-ի առաջնորդողը։*

«Կոնկրետ ղեկավարել սոցիալիստական մրցությունը»: *«Ս. Հ.» 1952 թ. օգոստոսի 2-ի առաջնորդողը։*

«Սոցիալիստական Աշխատանքի Հերոսների օրինակով»: *«Ս. Հ.» 1952 թ. օգոստոսի 7-ի առաջնորդողը։*

«Ուժեղացնել պայքարը բերքի կորուստների դեմ»: *«Ս. Հ.» 1952 թ. օգոստոսի 15-ի առաջնորդողը։*

Պտ. խմբագրի՝ Մ. Տ. ՔՈՉԱՐՅԱՆ

